Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 8 ԱՊՐԻԼ 1959

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն — Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78





# ԼԵՆԻՆԻԶՄԻ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ

## (Վ. Ի. Լենինի ծննդյան 89-ամյակի առթիվ)

Սովետական Միության ժողովուրդները, ամբողջ աշխարհի առաջադեմ մարդիկ մեծագույն երախտագիտությամբ նշում են Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության հիմնադիր մեծ Լենինի ծննդյան 89-րդ տարեդարձը։ Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան օրը սովետական մարդիկ տոնում են քաղաքական ու աշխատանքային բուռն վերելքի պայմաններում, որն առաջ է բերել հարազատ պարտիայի XXI համագումարը։ ՍՄԿՊ XXI համագումարը վերածվեց լենինիզմի գաղափարների հաղթանակի նոր, վառ ցույցի, սովետական ժողովրդին զինեց կոմունիստական հասարակարգի կառուցման գիտականորեն հիմնավորված ծրագրով։

Վ. Ի. Լենինը ռևոլյուցիոն մտքի և ռևոլյուցիոն գործունեության իսկական տիտան





էր։ Պատմական նոր պայմաններում՝ իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիաների դարաշրջանում, նա ամեն գույնի ու տեսակի ռևիզիոնիստների և օպորտունիստների դեմ մղած անհաշտ պայքարում, ստեղծագործաբար զարգացրեց ու նոր աստիճանի բարձրացրեց մարքսիզմը։ Վ. Ի. Լենինը համոզեցուցիչ, պարզ ու հստակ պատասխաններ տվեց պատմական նոր էպոխայում հասարակության առաջ ծառացած կենսական հրատապ հարցերին։ Լենինիզմը հզոր լուսարձակի նման լուսավորեց շահագործումից, գաղութային ճնշումից, ավերիչ պատերազմներից աշխատավոր ու տառապյալ մարդկության փրկության ուղին։ Բայց Լենինը միայն ռևոլյուցիոն տեսության ռահվիրա չէր։ Նա պրոլետարական մեծ ռևոլյուցիոներ էր, որն անմիջականորեն կազմակերպեց և գլխավորեց Ռուսաստանի բանվոր դասակարգի սոցիալական գոտեմարտերը գիտական կոմունիզմի գաղափարները կյանքում իրականացնելու համար։ Սովետական ժողովրդի առաջ, ամբողջ աշխարհի աշխատավոր մարդկության առաջ Վ. Ի. Լենինի անգնահատելի ծառայությունն այն է, որ նա ստեղծեց, կոփեց ու դաստիարակեց կոմունիստների մեծագույն պար-



տիան՝ մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը։

Կոմունիստական պարտիայի մեջ իր վառ ու լրիվ արտահայտությունն է գտել աշխարհը վերափոխող ու վերակառուցող լենինիզմը։ Լենինը և պարտիան անբաժանելի են։

Զարգացնելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ելակետային դրույթները բանվոր դասակարգի քաղաքական պարտիայի մասին, Լենինը ստեղծեց մի կուռ ուսմունք նոր տիպի պրոլետարական պարտիայի մասին։ Նա ցույց տվեց, որ պարտիան բանվոր դասակարգի գիտակից, կազմակերպված, ավանգարդային ջոկատն է, առանց որի ղեկավարության պրոլետարիատը չի կարող կատարել իր համաշխարհային-պատմական միսիան՝ տապալել կապիտալի տիրապետությունը, նվաճել քաղաքական իշխանություն և կառուցել կոմունիստական հասարակարգ։ Պարտիան այն ուժն է, որը տեսականորեն իմաստավորում է հասարակական երևույթները, ռևոլյուցիոն թեորիայով լուսավորում բանվոր դասակարգի նպատակը և դեպի այն տանող ուղիները։ Պարտիան մշակում է բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարի ստրատեգիան ու տակտիկան, սոցիալիստական գիտակցություն է մտցնում աշխատա-

վոր զանգվածների մեջ, բանվորական տաբերային շարժումը դարձնում գիտակցված, նպատակասլաց շարժում, կազմակերպում նրանց ռևոլյուցիոն գործողությունները։ Պարտիան ցեմենտում է բանվոր դասակարգի և նրա հետևից գնացող աշխատավորների շարքերը։

Մարքսիստական-լենինյան պարտիայի դերն ու նշանակությունը լավ են հասկանում նաև աշխատավորների դասակարգային թշնամիներն ու նրանց ռևիզիոնիստական սպասարկուները։ Ահա թե ինչու նրանք իրենց կրակը առաջին հերթին ուղղում են կոմունիստական պարտիաների դեմ, ճգնում են կտրել աշխատավորներին ռևոլյուցիոն պայքարից։

Ռուսաստանում պրոլետարական ռևոլյուցիոն շարժման արշալույսին Լենինն ասաց. «Տվեք մեզ ռևոլյուցիոներների կազմակերպություն և մենք շուռ կտանք Ռուսաստանը»։ Եվ նա ցարական ինքնակալության, կալվածատերերի ու կապիտալիստների դեմ մղած դասակարգային հերոսամարտերի բովում ստեղծեց ու կոփեց ռևոլյուցիոներների կազմակերպությունը ի դեմս կոմունիստների պարտիայի, որը իրոք 1917 թվականի հոկտեմբերին շուռ տվեց սոցիալա-



կան ու ազգային ճնշման, քաղաքական իրավազրկության, աղքատության և անգրագիտության Ռուսաստանը և հիմք դրեց կոմունիստական նոր Ռուսաստանի կառուցմանը։

Լենինը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ոգեշնչողն ու առաջնորդն էր, որը փոխեց պատմության ընթացքը։

Վ. Ի. Լենինը Սովետական պետության՝ բանվորների ու գյուղացիների աշխարհում առաջին պետության հիմնադիրն է։ Երբ դեռևս ռուսական առաջին ռևոլյուցիայի օրերին աշխատավորների ռևոլյուցիոն ստեղծագործությունը և ինքնագործունեությունը ծնեց Սովետները, լենինյան հանճարը նրանց մեջ տեսավ բանվոր դասակարգի քաղաքական իշխանության սաղմը, պրոլետարիատի դիկտատուրայի հիմքը։ Նա բազմակողմանիորեն մշակեց մարքսիստական ուսմունքը պրոլետարիատի դիկտատուրայի մասին, որը հենվում է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի վրա։

Սովետական պետությունը իսկական ժողովրդական պետություն է, դեմոկրատիայի բարձրագույն ձևը։ Վ. Ի. Լենինը բոլոր ազգերի ու ժողովուրդների բարեկամության, եղբայրության և իրավահավասարության

մեծ ջատագովն էր։ Հզոր սովետական բազմազգ պետությունը՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը լենինիզմի գաղափարների կենդանի մարմնացումն է։ Վ. Ի. Լենինին վիճակվեց սոցիալիստական շինարարությունը ղեկավարել միայն Սովետական իշխանության առաջին տարիներին։ Բայց իր հանճարեղ մտքով նա կարողացավ կանխատեսել մեր երկիրը դեպի կոմունիզմի բարձունքները տանող տասնամյակների ուղին։

Կատարելով Լենինի պատգամները, սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, պատմական չտեսնված կարճ ժամանակում հաջողությամբ իրագործեց երկրի ինդուստրացումը, գյուղատնտեսության կոլեկտիվացումը, կատարեց կուլտուրական ռևոլյուցիա և դրանով իսկ լուծեց հասարակության սոցիալիստական վերափոխման մեծագույն խնդիրները՝ մեր երկրում սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման պլանը։ Բավական է ասել, որ Սովետական Միությունը արդյունաբերական արտադրանքի արտադրությամբ շատ վաղուց առաջ անցնելով Անգլիայից, Ֆրանսիայից, Արևմտյան Գերմանիայից, դուրս եկավ առաջին տեղը Եվրոպայում և երկրորդ



տեղն աշխարհում։ Արդյունաբերության համախառն արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ մեր երկրում ավելացել է 36 անգամ, ընդ որում արտադրության միջոցների արտադրությունն աճել է 83 անգամ, իսկ մեքենաշինության ու մետաղամշակման արտադրանքը՝ 240 անգամ։

1958 թվականին ՍՍՌՄ-ում յուրաքանչյուր 10 օրում արտադրվել է արդյունաբերական նույնքան համախառն արտադրանք, որքան թողարկում էր ցարական Ռուսաստանը ամբողջ 1913 թվականին։ Եթե 1913 թվականին արտադրվել է ընդամենը 1,5 հազար մետաղահատ հաստոց, ապա 1958 թվականին՝ 138 հազար։ Սովետական Միությունը տարեկան արտադրում է 220 հազար տրակտոր (հիշենք, թե Լենինը ինչպես էր երազում 100 հազար տրակտոր ունենալու մասին), ավելի քան 10 հազար էքսկավատոր, ավելի քան 500 հազար ավտոմեքենա (յուրաքանչյուր րոպեում մեկ հատ)։ Ժողովրդական սպառման առարկաների արտադրությունն ավելացել է 14 անգամ, ընդ որում կուլտուր-կենցաղային առարկաների արտադրությունը՝ ավելի քան 15 անգամ։ Միայն Կույբիշևի հիդրոէլեկտրակայանը տարեկան արտադրում է հինգ անգամ ավե-

լի շատ էլեկտրաէներգիա, քան Ռուսաստանի բոլոր էլեկտրակայանները արտադրել են 1913 թվականին։ Ներկայումս մեկ ամսում ձուլվում է ավելի շատ պողպատ և արդյունահանվում ավելի շատ նավթ ու քարածուխ, քան 1913 թվականին, յուրաքանչյուր 3 օրում ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրվում, քան նախառևոլյուցիոն Ռուսաստանում։ Միայն Մագնիտագորսկի, Կուզնեցկի, Նիժնի-Տագիլի մետալուրգիական կոմբինատները և «Զապորոժստալ» գործարանը թողարկում են ավելի շատ չուգուն ու պողպատ, քան ինդուստրիալ զարգացած մի այնպիսի երկրի ամբողջ մետալուրգիական արդյունաբերությունը, ինչպիսին Ֆրանսիան է։

Գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը մեր երկրում արմատապես փոխեց գյուղատնտեսական արտադրության հիմքերը, գյուղացիների աշխատանքի, կյանքի ու կենցաղի պայմանները։ Ներկայումս գյուղացիական տնտեսությունները միավորված են ավելի քան 70 հազար կոլտնտեսություններում։ Բացի դրանցից կան 6 հազար պետական խոշոր գյուղատնտեսական ձեռնարկություններ՝ սովխոզներ։ Չնայած նախառևոլյուցիոն ժամանա-



կաշրջանի համեմատությամբ գրեթե երկու անգամ կրճատվել է գյուղատնտեսության մեջ զբաղված բնակչության տեսակարար կշիռը, գյուղատնտեսության համախառն ու ապրանքային արտադրանքը ավելացել է մի քանի անգամ, այդ թվում ցորենինը՝ 5 անգամ, բամբակի հումքինը՝ 6 անգամ, շաքարի ճակնդեղինը ու կարտոֆիլինը՝ 3 անգամ։ Վերջին հինգ տարում Կոմունիստական պարտիան իրագործեց մի շարք կարևոր միջոցառումներ գյուղատնտեսության բնագավառում, որոնք ապահովեցին նրա բոլոր ճյուղերի շեշտակի վերելքը։ Կարճ ժամկետում յուրացվեց 36 միլիոն հեկտար խամ ու խոպան հողեր, որի շնորհիվ Սովետական Միության ընդհանուր ցանքատարածությունն անցավ 195 միլիոն հեկտարից, որը 75 միլիոն հեկտարով ավելի է, քան 1913 թվականին։ 1958 թվականին մթերվեց 3 միլիարդ 500 միլիոն փութ հացահատիկ, այսինքն՝ մեկ միլիարդ 600 միլիոն փթով ավելի, քան 1953 թվականին, հավաքվեց ավելի քան 51 միլիոն տոննա շաքարի ճակնդեղ կամ երկու անգամից էլ շատ, քան 1953 թվականին։ Պետությանը հանձնվեց 4 միլիոն 400 հազար տոննա բամբակ։ Առաջներում երբեք այդքան բամբակ չէր մթերվել։ Մսի արտա-

դրությունը 1953 թվականի համեմատությամբ ավելացավ 2 միլիոն 100 հազար տոննայով, կաթինը՝ 21 միլիոն 300 հազար տոննայով, բրդինը՝ 86 հազար ցենտներով։ Կաթի և յուղի համախառն արտադրությամբ ՍՍՌՄ-ը դուրս է եկել առաջին տեղը աշխարհում։

ՍՍՌՄ-ում կատարված կուլտուրական ռևոլյուցիան սոցիալիզմի մեծագույն նվաճումներից է, որի շնորհիվ մեր երկիրը դարձավ համատարած գրագիտության, առաջավոր գիտության ու տեխնիկայի երկիր։ Ներկայումս ՍՍՌՄ-ում ուսուցման բոլոր ձևերում ընդգրկված է ավելի քան 50 միլիոն մարդ։ Այդ նշանակում է, որ մեր երկրի յուրաքանչյուր չորրորդ բնակիչը սովորում է։ 756 բուհերում, 3500 տեխնիկումներում ու միջնակարգ մասնագիտական ուսումնական այլ հաստատություններում սովորում է ավելի քան 4 միլիոն մարդ, 1914 թվականի 182 հազարի դիմաց։ Սովետական բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են մոտավորապես 4 անգամ ավելի շատ ուսանողներ, քան Անգլիայում, Ֆրանսիայում, Արևմտյան Գերմանիայում և Իտալիայում միասին վերցրած։ Ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառնե-



րում աշխատում է բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթությամբ 7 ու կես միլիոն մասնագետ, այսինքն՝ 39 անգամ շատ, քան 1913 թվականին։ Մեր երկրի բուհերը պատրաստում են համարյա 3 անգամ շատ ինժեներներ, քան ԱՄՆ-ի բուհերը։ 1958 թվականի վերջին գիտական աշխատողների թիվը մեր երկրում հասավ 270 հազարի, որը 27 անգամ ավելի է, քան մինչև ռևոլյուցիան։ Սովետական երկիրն ընթանում է արդիականության գիտա-տեխնիկական առաջադիմության առջևից և շատ կարևորագույն բնագավառներում նվաճել է համաշխարհային առաջնություն։ Բավական է նշել, որ 1954 թվականից Սովետական Միությունում գործում է աշխարհում առաջին ատոմային էլեկտրակայանը։ 1958 թվականին գործարկվեց 600 հազար կիլովատ կարողությամբ աշխարհում ամենախոշոր ատոմային էլեկտրակայանի 100 հազար կիլովատ հզորությամբ առաջին հերթը, ավարտվում է «Լենին» տուրբինային էլեկտրական ատոմային սառցահատի կառուցումը, ստեղծվել է լարված մասնիկների՝ աշխարհում ամենահզոր արագացուցիչը՝ մինչև 10 միլիարդ էլեկտրոնավոլտ էներգիայով։ ՍՍՌՄ-ում կազմակերպված է միջ-

*մայրցամաքային բալիստիկ հրթիռների սերիական արտադրությունը: Սովետական գիտնականները խոշոր նվաճումներ են ձեռք բերել ջերմամիջուկային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելու ուղղությամբ: Գիտության ու տեխնիկայի զարգացման մի ամբողջ նոր դարաշրջան են նշանավորում երկրի՝ աշխարհում առաջին արհեստական արբանյակների և համաշխարհային գիտատեխնիկական նվաճումների պսակը կազմող՝ արեգակնային համակարգության առաջին արհեստական մոլորակի արձակումը Սովետական Միության կողմից, որով հիմք դրվեց մարդու կողմից տիեզերքի նվաճմանը: Սովետական երկրի գիտա-տեխնիկական համաշխարհային-պատմական հաղթանակները ամբողջ աշխարհի առաջ վառ կերպով ցուցադրում են սոցիալիստական կարգերի ստեղծարար հզոր ուժը:*

*Սոցիալիստական էկոնոմիկայի ընդհանուր վերելքի, աշխատանքի արտադրողականության աճման հիման վրա անշեղորեն բարձրանում է սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունը: Եթե ժամանակակից կապիտալիզմի հիմնական նպատակը, նրա զարգացման գլխավոր խթանը աշխատավորների անողոք շահագործման միջոցով*



*առավելագույն շահույթ ստանալն է, ապա սոցիալիզմի վսեմ նպատակը, նրա շարժիչ հզոր ուժը ամբողջ հասարակության հարաճուն պահանջմունքների բավարարումն է:*

*Սոցիալիզմի հաղթանակով ՍՍՌՄ-ում, պատմության մեջ առաջին անգամ, վերջ է տրված գործազրկությանն ու աղքատությանը: Անընդհատ աճում են երկրի հանրային հարստությունը և ազգային եկամուտը: Սովետական իշխանության տարիներին ազգային եկամուտը բնակչության մեկ շնչի հաշվով ավելացել է 15 անգամ:*

*Վերջին մի քանի տարում պարտիան և կառավարությունը իրականացրին սովետական ժողովրդի նյութական բարեկեցության անշեղ վերելքն ապահովող մի շարք խոշոր միջոցառումներ:*

*Կոմունիստական պարտիայի լենինյան իմաստուն ազգային քաղաքականության հետևողական իրականացման շնորհիվ, սոցիալիզմի բազայի հիման վրա տնտեսական ու կուլտուրական տեսակետից նախկինում հետամնաց ազգերը թռիչք կատարեցին դեպի առաջադիմություն և ձևավորվեցին որպես նոր, սոցիալիստական ազգեր: Օրինակ, հենց մեր ռեսպուբլիկան, Սովետական Հայաստանը, որը դարձել է բարձր զարգացած,*

ժամանակակից արդյունաբերության ու գյուղատնտեսության, ծաղկող կուլտուրայի ռեսպուբլիկա։ Արդյունաբերական արտադրանքի ծավալը 1913 թվականի համեմատությամբ Սովետական Հայաստանում աճել է մոտ 55 անգամ։ Հայաստանի արդյունաբերության արտադրանքը ուղարկվում է արտասահմանյան 31 երկրներ։ Մեր ռեսպուբլիկայում ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրվում, քան ամբողջ ցարական Ռուսաստանում 1913 թվականին։

Բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի քանակով Հայկական ՍՍՌ-ն առաջ է անցել արդյունաբերական տեսակետից զարգացած այնպիսի կապիտալիստական երկրներից, ինչպիսիք են Անգլիան, Ֆրանսիան, Հոլանդիան, Ճապոնիան։ Ռեսպուբլիկայում արտադրվում են ժողովրդական սպառման ավելի քան 400 տեսակի ապրանքներ։ Միայն տեքստիլ արդյունաբերության արտադրանքը, 1913 թվականի համեմատությամբ, ավելացել է 70 անգամ։ Արմատապես փոխվել է հայ գյուղի դեմքը։ Մեքենայական բարձր տեխնիկան և էլեկտրիֆիկացիան լայնորեն մուտք են գործել գյուղատնտեսության մեջ։ Սովետական Հայաստանը դարձել է համատարած գրագի-



տության, առաջավոր գիտության, բարձր կուլտուրայի ռեսպուբլիկա։ Հատկանշական է, որ Հայաստանը աշխարհում գրավում է առաջին տեղը բնակչության 1000 շնչին ընկնող ուսանողների և բժիշկների թվով։

Հանրագումարի բերելով ժողովրդական տնտեսության, գիտության, տեխնիկայի ու կուլտուրայի վերելքի գործում ձեռք բերած իր մեծագույն հաղթանակները, սովետական ժողովուրդը դրանք դիտում է, որպես կոմունիզմի բարձրագույն փուլին անցնելու ամուր հիմք։ Սոցիալիզմի ամեն մի նոր հաջողություն մի նոր քայլ է դեպի կոմունիստական հասարակարգ տանող ճանապարհին։ ՍՄԿՊ XXI համագումարը իրենով նշանավորեց լենինյան գաղափարների հաղթական երթի մի նոր, կարևորագույն էտապ։ Համագումարը ի լուր աշխարհի ազդարարեց Սովետական Միության մուտքը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ Այդ ժամանակաշրջանի գլխավոր խնդիրներն են՝ կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը, ՍՍՌՄ տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդումը և ժողովրդի նյութական ու հոգևոր աճող պահանջմունքների ավելի լրիվ բավարարումը։

Յոթնամյա պլանը տվյալ ժամանակաշրջանում պարտիայի լենինյան գլխավոր գծի կոնկրետ արտահայտությունն է։ Յոթնամյակի ընթացքում որակական մեծ թռիչք կկատարվի արտադրողական ուժերի զարգացման մեջ։ Արդյունաբերության համախառն արտադրանքը կավելանա 80 տոկոսով, այդ թվում արտադրության միջոցների արտադրությունը՝ 85—88 տոկոսով և սպառման առարկաների արտադրությունը՝ 62—65 տոկոսով։ Ընդ որում հարկավոր է նկատի ունենալ, որ տարեցտարի կմեծանա արտադրանքի աճի մեկ տոկոսի արժեքը։

Եթե 1952 թվականին համախառն արտադրանքի աճի մեկ տոկոսը կազմում էր 5 միլիարդ ռուբլի, ապա 1959 թվականին այն կկազմի 11 միլիարդ ռուբլի, իսկ 1965 թվականին կհասնի 19 միլիարդ ռուբլու։ Նախատեսված է 1965 թվականին չուգունի արտադրությունը հասցնել 65—70 միլիոն տոննայի, պողպատինը՝ 86—91 միլիոն տոննայի, գլանվածքինը՝ 65—70 միլիոն տոննայի, նավթինը՝ 230—240 միլիոն տոննայի, գազինը՝ 150 միլյարդ խորանարդ մետրի, ածխի հանույթը՝ 596—609 միլիոն տոննայի։ Յոթնամյա պլանը կլինի վճռական էտապ երկրի համատարած էլեկտրիֆիկացման լե-



նինյան պլանի իրականացման ասպարեզում, «Կոմունիզմը՝ դա Սովետական իշխանություն է պլյուս ամբողջ երկրի էլեկտրիֆիկացիան»։ Լենինյան այս բնորոշման մեջ արտահայտված է կոմունիստական հասարակության նյութա-տեխնիկական բազայի և կապիտալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանի պետական իշխանության քաղաքական ձևի միասնությունը։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը 1965 թվականին կհասնի 500—520 միլիարդ կիլովատ ժամի, այսինքն՝ կավելանա 2—2,2 անգամ։ Տեղի կունենա ժողովրդական սպառման առարկաների արտադրության նշանակալից աճ։ 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, թեթև արդյունաբերության արտադրանքը կավելանա 1,5 անգամ, իսկ սննդարդյունաբերությանը՝ 1,7 անգամ։ Բընակչության մեկ շնչին ընկնող պարենային մի շարք կարևոր ապրանքների արտադրության մակարդակով ՍՍՌՄ-ը կհասնի և կանցնի տնտեսապես առավել զարգացած բոլոր կապիտալիստական երկրներից։ Առաջիկա յոթնամյակում նոր, հզոր վերելք կապրի սոցիալիստական գյուղատնտեսությունը։ Գյուղատնտեսության համախառն

*արտադրանքի ծավալը կմեծանա 1,7 անգամ։ Հացահատիկի արտադրությունը կհասնի 10—11 միլիարդ փթի, շաքարի ճակնդեղինը՝ 76—84 միլիոն տոննայի, բամբակինը՝ 5,7—6,1 միլիոն տոննայի, մսինը՝ (սպանդանոցային քաշով)՝ 16 միլիոն տոննայի, կաթինը՝ 100—105 միլիոն տոննայի, կարտոֆիլինը՝ 147 միլիոն տոննայի, բանջարեղենինը բնակչության պահանջմունքները լրիվ բավարարող չափերի։*

*Սոցիալիստական ընդլայնված վերարտադրության բարձր տեմպերի հիմքը կապիտալ ներդրումներն են, որոնց ծավալը յոթնամյակի ընթացքում կկազմի մոտ երկու տրիլիոն ռուբլի, որը գրեթե հավասար է սովետական իշխանության բոլոր տարիներին ժողովրդական տնտեսության մեջ կատարած կապիտալ ներդրումներին։*

*ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների պլանի մեջ վառ կերպով արտահայտված է լենինյան ազգային քաղաքականությունը, որը լայն հնարավորություններ է ապահովում մեր երկրի բոլոր ժողովուրդների էկոնոմիկայի ու կուլտուրայի համակողմանի զարգացման համար։*



*ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության յոթնամյա պլանի բաղկացուցիչ մասն է, հանդիսանում Հայկական ՍՍՌ էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման 1959—1965 թվականների պլանը, որը նախատեսում է ռեսպուբլիկայի տնտեսության հարաճուն աճ։ Արդյունաբերական արտադրանքի արտադրությունը Հայկական ՍՍՌ-ում 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կավելանա 2,2 անգամ։ Արդյունաբերության աճի տարեկան միջին տեմպերը կկազմի 12 տոկոս, ըստ որում յուրաքանչյուր տոկոսի աճի արժեքը հավասար կլինի 68 միլիոն ռուբլու՝ 1952—1958 թվականների 33 միլիոն ռուբլու փոխարեն։ Առավել արագ տեմպերով կզարգանան ռեսպուբլիկայի արդյունաբերության առաջատար ճյուղերը՝ գունավոր մետալուրգիան, քիմիական, էլեկտրատեխնիկական և սարքաշինական արդյունաբերությունը, էներգետիկան։ Գունավոր մետալուրգիայի համախառն արտադրանքի ծավալը կմեծանա գրեթե 3 անգամ, քիմիական արդյունաբերությանը՝ 3,3 անգամ, մեքենաշինությանը՝ 3,5 անգամ, այդ թվում էլեկտրատեխնիկական արդյունաբերությանը՝ 3 անգամ, ռադիո-տեխնիկական*

ու սարքաշինական արդյունաբերությանը՝ 8,7 անգամ, հաստոցաշինական ու գործիքաշինական արդյունաբերությանը՝ 7,4 անգամ:

Ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը ռեսպուբլիկայում կավելանա 1,7 անգամ: Հենվելով ձեռք բերած հաջողությունների վրա, յոթնամյակի տարիներին նոր վերելք կապրի ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը: Պետական կապիտալ ներդրումների ծավալը 1959—1965 թվականներին Հայկական ՍՍՌ-ում կաճի մեծ չափով և կկազմի մոտավորապես 12,5 միլիարդ ռուբլի, այսինքն՝ 2,3 անգամ կգերազանցի նախորդ յոթնամյակի ներդրումները:

Սոցիալիստական ընդլայնված վերարտադրության և կուտակման հիմնական աղբյուրը, սովետական ողջ ժողովրդի կենսամակարդակի հետագա վերելքի հիմքը հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացումն է:

Աշխատանքի արտադրողականությունը, նշել է Վ. Ի. Լենինը, ամենակարևորագույնն է, ամենագլխավորը նոր հասարակական կարգի՝ կոմունիզմի հաղթանակի համար:



ՍՄԿԿ XXI համագումարը խնդիր դրեց արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը մեկ աշխատողի հաշվով բարձրացնել 45—50 տոկոսով, շինարարության մեջ՝ 60—65 տոկոսով, երկաթուղային տրանսպորտում՝ 34—37 տոկոսով, սովխոզներում՝ 60—65 տոկոսով, կոլտնտեսություններում՝ մոտավորապես երկու անգամ: 1965 թվականին արդյունաբերական արտադրանքի աճման երեք քառորդը ձեռք կբերվի աշխատանքի արտադրողականության աճման հաշվին:

Էկոնոմիկայի բոլոր ճյուղերի հետագա հզոր վերելքի և ծանր ինդուստրիայի առավել աճի հիման վրա յոթնամյակի ընթացքում տեղի կունենա աշխատավորների կենսամակարդակի անընդհատ բարձրացում: Ամբողջ հասարակության հարաճուն նյութական ու կուլտուրական պահանջմունքների անշեղ բավարարումը հանդիսանում է Կոմունիստական պարտիայի գործունեության գերագույն օրենքը: Կանխագծելով արտադրողական ուժերի զարգացման մի վիթխարի պլան, Կոմունիստական պարտիան դրանով իսկ հոգ է տանում, որպեսզի սովետական ժողովուրդը ամենամոտ ժամանակներս է՛լ

ավելի լավ ապրի, ավելի լրիվ բավարարի իր նյութական և հոգևոր պահանջմունքները, որպեսզի երկրում ստեղծվի նյութական բարիքների այնպիսի առատություն, որն անհրաժեշտ է «...հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցությունը և ազատ համակողմանի զարգացումն ապահովելու համար»։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նոր հուժկու վերելքը հնարավորություն կտա Սովետական պետությանը մոտակա տարիներին հրաժարվել բնակչությունից հարկեր գանձելուց, որոնց տեսակարար կշիռը արդեն այժմ աննշան է և կազմում է պետական բյուջեի եկամուտների սոսկ 7,8 տոկոսը։

Սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացումը կուղեկցվի աշխատանքային օրվա կրճատմամբ, որը կիրագործվի ոչ միայն առանց աշխատավարձի նվազեցման, այլև նրա զգալի աճի պայմաններում։ ՍՍՌՄ-ում կլինի աշխարհում աշխատանքային ամենակարճ օրը և ամենակարճ աշխատանքային շաբաթը։ Դա կլինի սովետական ժողովրդի մեծագույն նվաճումը, աշխատավորների դարավոր իղձերի իրականացումը։



Լենինիզմի գաղափարների հաղթանակի վառ մարմնացումն է հանդիսանում սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումը։ Ներկայումս սոցիալիզմին բաժին է ընկնում մեր մոլորակի տերիտորիայի 26,6 տոկոսը, որտեղ ապրում է երկրագնդի բնակչության մոտ 35 տոկոսը, համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մոտ մեկ երրորդը։ Բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի արտադրությամբ համաշխարհային սոցիալիստական սիստեմը ամբողջությամբ վերցրած, արդեն հասել է համաշխարհային կապիտալիստական սիստեմին։

Յոթնամյա պլանի կատարման ու գերակատարման, ինչպես նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների էկոնոմիկայի զարգացման բարձր տեմպերի շնորհիվ, համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրները կարտադրեն ամբողջ համաշխարհային արդյունաբերական արտադրանքի ավելի քան կեսը։ «Դրանով իսկ,— ասված է ՍՄԿԿ XXI արտահերթ համագումարի բանաձևում,— կա-

պահովվի կապիտալիզմի համաշխարհային սիստեմի նկատմամբ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գերազանցությունը նյութական արտադրության մեջ՝ մարդկային գործունեության վճռական ոլորտում»: Այդ նշանակում է, որ աշխարհի տնտեսական քարտեզի վրա կապիտալիզմն ստիպված կլինի կծկվել ավելի շատ, քան աշխարհագրական քարտեզի վրա:

Վ. Ի. Լենինը միջազգային կոմունիստական շարժման ճանաչված առաջնորդն է: Նա իդեապես զինել և պայքարի ու հաղթանակների ճիշտ հունի մեջ է դրել կոմունիստական շարժումը: Երբ 1847 թվականին պրոլետարիատի մեծ ուսուցիչներ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը հիմնադրեցին կոմունիստական առաջին կազմակերպությունը՝ «Արդարների միությունը», նրա շարքերում կար ընդամենը 300 մարդ: Միջազգային կոմունիստական շարժումը գնալով ծավալվում է խորությամբ ու լայնությամբ և իրենից ներկայացնում մի վիթխարի հասարակական առաջադիմական ուժ, որին պատկանում է ապագան:

Ներկայումս աշխարհում կան 83 կոմունիստական պարտիաներ՝ ավելի քան 33 միլիոն անդամներով: ՍՄԿՊ XXI համագումարը



վերածվեց մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի հաղթական գաղափարների հիման վրա միջազգային կոմունիստական շարժման աճող և ամրապնդվող ուժերի, նրանց անխորտակելի միասնության ու համերաշխության վառ ցույցի:

Լենինիզմի գաղափարների հաղթական երթը իր արտահայտությունն է գտնում գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի և հաղթանակների մեջ: Իր հանճարեղ մտքով Լենինը կանխատեսեց այն մեծ ժամը, երբ կղողանջի ազատության զանգը և Արևելքի ժողովուրդները կփշրեն իմպերիալիստական գաղութակալության շղթաները, դուրս կգան ազատ ու անկախ կյանքի ասպարեզ, սեփական ձեռքը կվերցնեն իրենց բախտը:

Մեծ Լենինի կանխատեսած այդ ժամը եկել է: Դարերի ընթացքում կապիտալիզմի կողմից ստեղծված գաղութային սիստեմը հոգեվարք է ապրում: Գաղութակալության լուծը թոթափել են ավելի քան մեկ միլիարդ 300 միլիոն մարդ, այսինքն՝ երկրագնդի բնակչության կեսը: Գաղութային սիստեմի լիակատար կործանումը դարձել է օրակարգի հրատապ հարց:

Կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում սովետական ժողովրդի ղեկավար և ուղղություն տվող ուժը մեծ Լենինի կողմից ստեղծված Կոմունիստական պարտիան է։ ՍՍՌՄ-ում սոցիալիզմի պատմական հաղթանակները և այդ հաղթանակների վրա խարսխված մեր հետագա զարգացման հոյակապ պլանները Կոմունիստական պարտիայի քաղաքական ու կազմակերպական հսկայական աշխատանքի արդյունքն են։ Սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի համար պայքարի ամբողջ փորձը ցույց է տալիս, որ կոմունիստական հասարակարգի կառուցման պրոցեսում ավելի ու ավելի է աճում պարտիայի ղեկավար դերը՝ որպես ժողովրդի փորձված ավանգարդի և հասարակական կազմակերպության բարձրագույն ձևի։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան կոմունիզմի ծավալուն ժամանակաշրջանն է մտնում այժմ, քան երբևէ, ուժեղ, միասնական, լի ստեղծագործական անսպառ եռանդով, զինված աշխատավորների քաղաքական ու կազմակերպական ղեկավարման մեծահարուստ փորձով, սերտորեն համախմբված իր լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը։



Սրբորեն կատարելով մեծ Լենինի ավանդները, ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն աչքի լույսի պես է պահպանում պարտիական շարքերի անաղարտությունը և միասնությունը, որը նրա ուժի ու ամրության անսպառ աղբյուրն է։ Մերկացնելով և գաղափարապես ջախջախելով Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի, Բուլգանինի, Շեպիլովի հակապարտիական խումբը, պարտիան է՛լ ավելի ամրապնդեց իր շարքերի միասնությունը և միաձուլությունը։

Կոմունիստական պարտիան հաղթանակել և հաղթանակում է հավատարիմ լինելով մարքսիզմ-լենինիզմին, կոմունիստական շինարարության պրակտիկայում ստեղծագործաբար զարգացնելով և կիրառելով այն։ Սովետական Միության Կոմունիստական պարտիան ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի պարտիա է։ Ռևոլյուցիոն թեորիայի ու պրակտիկայի օրգանական միասնությունը պարտիայի կյանքի ու գործունեության հիմնական բնորոշ գիծն է։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ուժն այն է, որ նա միշտ քայլում է կյանքին համընթաց, ուշադիր ունկնդրում նրա ձայնին, սերտորեն և բյուրավոր թելերով կապված է աշխատավորական ամենալայն

զանգվածների հետ, անսահման ասպարեզ է տալիս նրանց ստեղծագործական նախաձեռնությանը և ակտիվությանը:

Կոմունիստական պարտիան վայելում է վիթխարի հեղինակություն, նրա քաղաքականությունը միահամուռ և գործոն կերպով պաշտպանում է սովետական ամբողջ ժողովուրդը: Պարտիայի և ժողովրդի միասնությունն այսօր ամուր է, անխորտակելի, քան երբևիցե:

Լենինը մեծ էր, հերոսական, հմայիչ ու պայծառ ո՛չ միայն որպես առաջնորդ և ուսուցիչ, այլ նաև որպես մարդ: Ինչպես ասել է Կլարա Ցետկինը, Լենինի մեջ հիանալի ներդաշնակությամբ միաձուլվում էին մեծագույն գիտնականի, մարքսիզմի հանճարեղ թեորետիկի, ռևոլյուցիոն զանգվածների անզուգական կազմակերպչի և մարդու մեծությունը: Հանճարեղ մտքի հետ մեկտեղ նա ուներ զգայուն սիրտ: Վ. Ի. Լենինի բնավորության գծերն են՝ անհուն սեր դեպի աշխատանքի մարդիկ, սրբազան, այրող ատելություն դեպի ամեն տեսակ շահագործումն ու ճնշումը, անսահման զգայուն, ընկերական, հոգատար վերաբերմունք մարդկանց նկատմամբ, մեծ հումանիզմ: Նա համեստագույնն



էր համեստների մեջ, անմիջական, անկեղծ ու պարզ:

Վլադիմիր Իլյիչ Լենինը մեծ է նրանով, որ նա հասկանալի է, մոտ ու հարազատ ամենքին: Հանրի Բարբյուսը Լենինի մասին ասել է. «Դուք նրան ծանոթ չէիք, բայց նա ճանաչում էր ձեզ, նա մտածում էր ձեր մասին: Ով էլ որ լինեք, այդ բարեկամի կարիքն զգում եք դուք»:

Լենինյան գաղափարները հասկանալի են բոլոր երկրների աշխատավորների համար, որովհետև ոչ ոք այնպես պարզ չի արտահայտել նրանց դարավոր ու ամենանվիրական իղձերը, ինչպես Լենինը:

Լենինը օրեցօր դառնում է ավելի ու ավելի կենդանի, որովհետև նրա գաղափարները տիրապետում են աշխատավոր մասսաներին, դառնում նյութական հզոր ուժ: Լենինիզմը դարձել է ձգողական մեծ ուժ աշխարհի բոլոր երկրներում, նրա գաղափարները դառնում են ամբողջ աշխարհի աշխատավոր մարդկության խոհերի տիրակալը, շոշափելի ու հարազատ գործ միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց համար, պատմական կենսական անհրաժեշտություն: Լենինիզմը մեր դարի ամենաժողովրդական իդեան է: Ի դեմս

լենինիզմի մեր դարաշրջանը գտել է իր բարձրագույն իմաստությունը, առաջադիմության հաղթական դրոշը։

Կոմունիզմը, որի մասին մարգարեաբար, այնքան մեծ ոգեշնչումով գրել են Մարքսը, Էնգելսը, Լենինը, հանուն որի անձնազոհաբար պայքարել են շատ սերունդների լավագույն մարդիկ, սովետական ժողովրդի ստեղծագործական աշխատանքով դառնում է իրականություն։

«Մենք վստահորեն ու հաստատ առաջ ենք ընթանում լենինյան փորձված ուղիով, հաղթահարելով բոլոր խոչընդոտներն ու արգելքները,— ասաց ընկեր Ն. Ս. Խրուշչովը իր զեկուցման մեջ XXI համագումարում։— Ինչպես ալպինիստների առաջավոր ջոկատը համարձակորեն և արիաբար գրոհում է նոր, անառիկ թվացող գագաթները և ուղի է հարթում առաջավոր ջոկատին հետևող մարդկանց համար, այնպես էլ մեր պարտիան՝ Սովետական Միության բանվոր դասակարգի, աշխատավորների մարտական ավանգարդը, սովետական ժողովրդին տանում է դեպի կոմունիզմի շողշողուն գագաթները»։

Եվ աշխարհում ո՛չ մի ուժ չի կարող նրան շեղել այդ պայծառ ուղուց։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԻ ՕՐԸ

## Վ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ

Մայիսի 5-ը սովետական մամուլի օրն է։ Ամեն տարի այդ օրը սովետական մամուլի աշխատողները հաշիվ են տալիս երկրին իրենց կատարած աշխատանքի մասին։ Թերթերի, ամսագրերի, ռադիոյի, հրատարակչությունների աշխատողների, բանգյուղթղթակիցների և ընթերցողների բազմամարդ ժողովներում խոսվում է այն մեծ ու պանծալի ուղու մասին, որ անցել է մամուլը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ։

1912 թվականի մայիսի 5-ին Պետրոգրադի բանվորների նախաձեռնությամբ լույս տեսավ բոլշևիկյան «Պրավդա» օրաթերթի առաջին համարը, թերթ, որ այնքան շատ բան արեց Լենինյան պարտիայի շարքերի համախմբման և Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի համար մղված պայքարում, Սովետական իշխանության ամրապնդման և մեր երկրի զարգացման բոլոր էտապներում։ Ահա թե ինչու

«Պրավդա» թերթի լույսընծայման օրն այնքան նվիրական է դարձել ամբողջ սովետական մարդկանց համար։ Ի նշանավորումն այդ պատմական իրադարձության, Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն 1922 թվականին, այսինքն՝ «Պրավդա»-ի տասնամյակի առթիվ, որոշեց մայիսի 5-ը հայտարարել Մամուլի օր։ Կենտրոնական Կոմիտեի այդ որոշումը հավանություն գտավ մեր պարտիայի XI համագումարի կողմից։ «Պրավդա» թերթը իր ստեղծման առաջին տարին լույս էր տեսնում 60 հազար օրինակով, իսկ այժմ այն լույս է տեսնում ավելի քան 5 միլիոն օրինակով։ Սովետական մամուլի աճը ցույց տալու համար ուրիշ շատ թվեր ու համեմատություններ կարելի է բերել։

Թերթն ու ամսագիրը ներկայումս մտել է սովետական մարդկանց կենցաղը, դարձել նրանց բարեկամն ու խորհրդատուն։ Այժմ Սովետական երկրում լույս է տեսնում ավելի քան տասը հազար թերթ։ Այդ թերթերը լույս են տեսնում վաթսուն լեզուներով, ավելի քան 60 միլիոն տպաքանակով։ Թերթերի միջոցով սովետական ընթերցողները ծանոթանում են Կոմունիստական պարտիայի պլաններին, հաղորդակից լինում



նրա վարած արտաքին քաղաքականությանը, ծանոթանում այն հերոսական աշխատանքին, որ կատարում են սովետական մարդիկ՝ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի պատմական որոշումները կենսագործելու ուղղությամբ։

Բայց թերթերը միայն նորություններ, լուրեր չէ, որ հաղորդում են։ Նրանք ամեն օր, ամեն ժամ աշխատավորների լայն շրջանում տարածում են մարքսիզմի-լենինիզմի մեծ գաղափարները, կազմակերպում մարդկանց, ոգեշնչում ավելի մեծ հաջողությունների հասնելու։ Այդպես է եղել սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում։ Ահա թե ինչու Կոմունիստական պարտիայի ստեղծող և Սովետական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինը այնքան բարձր է գնահատել մամուլի դերը, նրան անվանելով կոլեկտիվ պրոպագանդիստ, կոլեկտիվ ագիտատոր և կոլեկտիվ կազմակերպիչ։ Հանճարեղ առաջնորդը ստեղծեց նոր տիպի, իրոք ժողովրդական մամուլը և կանխորոշեց նրա խնդիրները սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման գործում։ Կատարելով լենինյան պատգամները, սովետական մամուլը հանդիսանում է մեր պարտիայի գաղափարական ա-

մենահզոր զենքը և միշտ գտնվում է պայքարի առաջավոր բնագծում։

Մեր երկիրն աշխարհում առաջնակարգ տեղ է գրավում գրքի հրատարակության բնագավառում։ Բավական է ասել, որ Սովետական իշխանության 40 տարիներին հրատարակվել է մոտ 1 միլիոն 386 հազար անուն գիրք։ Դրանք լույս են տեսել 122 լեզվով, ավելի քան 20 միլիարդ տպաքանակով։ Հետաքրքրական է իմանալ, որ ըստ հաշվարկումների մեր երկրում յուրաքանչյուր րոպեում լույս է տեսնում 7.500 օրինակ գիրք։ Մարդկային պատմության մեջ այս աննախընթաց աճը ցույց է տալիս, թե ինչպես գիրքն ու գրականությունը դարձել են կենսական պահանջ։

Գրքերի և թերթերի, ամսագրերի հրատարակության վիթխարի աճը կարելի է ցույց տալ նաև մեր ռեսպուբլիկայի օրինակով։ Միայն «Սովետական Հայաստան» թերթի տպաքանակը հասնում է 100 հազարի։ Հըսկայական չափով աճել է նաև «Կոմունիստ»-ի, «Ավանգարդ»-ի և մյուս թերթերի տպաքանակը։

Անցյալ տարի միայն Հայաստանի Պետական Հրատարակչությունը լույս է ընծա-



յել 516 անուն գիրք՝ 3 միլիոն 741.000 տպաքանակով։

Հաստատելով կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի հանճարեղ պլանը, մեր պարտիայի XXI համագումարը ամենայն հստակությամբ շարադրեց սոցիալիզմից կոմունիզմին անցնելու տեսական ու գործնական հրատապ հարցերը, յոթնամյակում պարտիայի գըլխավոր խնդիրները։ Համագումարը պահանջեց բարձրացնել աշխատավորների, և ամենից առաջ աճող սերնդի, կոմունիստական գիտակցականությունը, նրանց դաստիարակել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով, հաղթահարել կապիտալիզմի մնացուկները մարդկանց գիտակցության մեջ, պայքարել բուրժուական գաղափարախոսության դեմ։

Այսպիսով, մեր պարտիան որոշել է կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարի նոր բնագիծը։ Ինչպես նշեց համագումարը պարտիայի գաղափարական աշխատանքում կարևոր դեր պետք է խաղան մամուլը, ռադիոն և հեռուստատեսությունը։ Ո՞վ

չգիտե, որ մամուլն ամեն օր, ամեն ժամ խոսում է ընթերցողների հետ, նրանց հասկանալի լեզվով։ Մեզ մոտ արդեն տրադիցիա է դարձել մայիսի 5-ին հանրագումարի բերել կատարվածը, նշել հաջողությունները ու թերությունները, ուրվագծել առաջիկա անելիքները։

Վերևում մի քանի թվեր բերվեցին ցույց տալու համար սովետական մամուլի աճը։ Բայց մամուլի աճը չի կարող բնորոշվել միայն թվերով։ Տարեցտարի բարձրանում է նրա դերն ու նշանակությունը։ Մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի մասին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսների համաժողովրդական քննարկումն ու համագումարի որոշումները նոր հորիզոններ են բացում կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ճանապարհին։

Համագումարին նախորդող շրջանում թերթերը, ամսագրերը, ռադիոն լուսաբանում էին յոթնամյակի կոնտրոլ թվերի մասին ընկեր Խրուշչովի զեկուցման թեզիսների համաժողովրդական քննարկման ընթացքը։ Բանվորները, կոլտնտեսականները, ինտելիգենցիայի ներկայացուցիչները մամուլում և ռադիոյում



հանդես էին գալիս իրենց առաջարկություններով և դիտողություններով։ Այդ ժամանակաշրջանում կենտրոնական, ռեսպուբլիկական, տեղական թերթերը, ռադիոն, հեռուստատեսությունը ստացան ավելի քան 650 հազար նամակ, հոդված, որոնցում դիտողություններ, լրացումներ, առաջարկություններ էին արվում յոթնամյակի կոնտրոլ թվերի նկատմամբ։ Դրանցից հրապարակվել են ավելի քան 300 հազարը։

Այժմ սովետական ժողովուրդը մեծագույն ոգևորությամբ սկսել է կենսագործել կոմունիզմ կառուցողների համագումարի կողմից ընդունված յոթնամյա պլանի վերաբերյալ որոշումը և համաժողովրդական սոցիալիստական մրցություն է ծավալում յոթնամյակը 5—6 տարում կատարելու համար։ Ներկայումս սովետական մամուլի գլխավոր խնդիրն է ՍՄԿԿ XXI համագումարի որոշումների վառ և խոր պրոպագանդան։ Մամուլը պետք է օգնի պարտիական կազմակերպություններին՝ համագումարի որոշումները յուրաքանչյուր աշխատավորի գիտակցությանը հասցնելու համար։

Այդ նույն պատվավոր խնդիրն է դրված նաև ագիտատորների մեծ բանակի առջև։ Այդ

բանակին ամենօրյա մեծ օգնություն է ցույց տալիս սովետական մամուլը, որը համագումարի որոշումների պարզաբանման, նրա առանձին դրույթների մանրամասն և փաստական շարադրման առթիվ շատ հետաքրքրական նյութեր է տալիս։ Գործարանային և կոլտնտեսային բազմատիրաժ և պատի թերթերը հանդես են գալիս հետաքրքրական նյութերով՝ «Մեր գործարանը յոթնամյակում», «Մեր կոլտնտեսության զարգացման հեռանկարները», «Մեր ձեռնարկության այսօրն ու վաղը»։ Այսպիսի շատ նյութեր կարող են գտնել Կիրովի անվան գործարանի ագիտատորները գործարանի «Կիրովեց» բազմատիրաժ թերթում։ Նույնը կգտնեն նաև Երևանի Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, ԿԱՆԱԶ գործարանների, Լենինականի Տեքստիլ, Կիրովականի Քիմիական, Քաչարանի կոմբինատների և այլ հիմնարկ-ձեռնարկությունների բազմատիրաժ ու պատի թերթերում։

Յոթնամյակը ժամկետից շուտ կատարելու և գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու համար ծավալվող համաժողովրդական սոցիալիստական մրցության մասին հետաքրքրական նյութեր են



տալիս Նոր Բայազետի, Կոտայքի, Աշտարակի, Հոկտեմբերյանի, Արտաշատի, Ախտայի կոլտնտեսային բազմատիրաժ և պատի թերթերը։

Բայց այն, ինչ կատարել է մեր մամուլը դեռևս հիմք չի տալիս հանգստանալու։ Վերջին շրջանում ռեսպուբլիկաներում և մարզերում անց են կացվում ժուռնալիստների առաջին համագումարներ ու կոնֆերանսներ։ Ընթացիկ տարվա ապրիլի 6-ին տեղի ունեցավ նաև Հայաստանի ժուռնալիստների առաջին համագումարը։ Ժուռնալիստների Միության ստեղծումն արդեն մեկ անգամ ևս ապացուցում է մեր մամուլի, նրա գործիչների նկատմամբ Կոմունիստական պարտիայի լենինյան հոգատարության մասին։ Այդ հոգատարությանը սովետական ժուռնալիստները պատասխանում են նորանոր խիզախումներով։ Բայց միայն ժուռնալիստները ոչինչ չեն կարող անել, եթե նրանք թերթերի, ամսագրերի, ռադիոյի շուրջը չհամախմբեն բանվոր և գյուղական թղթակիցների, ինտելիգենցիայի ներկայացուցիչների նորանոր խմբերի։ Հանրահայտ փաստ է, որ մեր մամուլի ուժը պարտիական ղեկավարության մեջ է, ժողովրդի հետ ունեցած նրա սերտ

կապի մեջ։ Ահա թե ինչու ժուռնալիստների
համագումարների, կոնֆերանսների, բան-
գյուղթղթակիցների ժողովների տրիբունանե-
րից այնքան բարձր, այնքան իրավացի է
հնչում այն պահանջը, որ եթե մենք ուզում
ենք, մամուլը գտնվի կոմունիզմի կառուց-
ման պայքարի առաջավոր դիրքերում և սր-
բորեն կատարի մեծ Լենինի պատգամը մա-
մուլի դերի մասին, որպես կոլեկտիվ պրո-
պագանդիստի, կոլեկտիվ ագիտատորի և կո-
լեկտիվ կազմակերպչի, անհրաժեշտ է ավելի
ուժեղացնել մամուլի կապը մասսաների հետ,
որ նա ավելի համարձակորեն թափանցի մեր
բազմահարուստ իրականության մեջ, ցույց
տա այն նորը, առաջավորը, որ ծնվում ու
զարգանում է կոմունիստական շինարարու-
թյան յուրաքանչյուր բնագավառում։ Պար-
տիան սովորեցնում է մամուլի աշխատողնե-
րին լավն ու առաջավորը ցույց տալու հետ
միաժամանակ բացահայտել դեռևս գոյու-
թյուն ունեցող թերությունները։ Ծավալելով
քննադատությունն ու ինքնաքննադատու-
թյունը, մամուլը պետք է հասնի այն բանին,
որ անհետևանք չմնա աշխատավորի ո՛չ մի
նամակ, ո՛չ մի առաջարկություն։
Այժմ երկրով մեկ լայնորեն ծավալվում է



սոցիալիստական մրցություն՝ կոմունիստա-
կան աշխատանքի բրիգադայի պատվավոր
կոչում նվաճելու համար։ Մրցողները պար-
տավորություն են ստանձնում ապրել ու աշ-
խատել կոմունիստաբար։ Այս սոցիալիստա-
կան մրցության նոր, բարձր աստիճանն է,
ուր բանվորներն ու բանվորուհիները պար-
տավորվում են բարձրացնել ոչ միայն աշ-
խատանքի արտադրողականությունը, այլև
իրենց տեխնիկական, կուլտուրական մա-
կարդակը, ուսումնասիրել մի քանի մասնա-
գիտություններ, պայքարել անցյալի մնա-
ցուկների դեմ, հանուն բարոյական բարձր,
վսեմ նորմաների։
Բացելով և կարդալով թերթերը, ամսա-
գրերը, լսելով ռադիոն, մեր աշխատավոր-
ները հաճույքով են նկատում, թե ինչպես
սովետական մամուլը քայլ առ քայլ հե-
տևում է յոթնամյակը ժամկետից շուտ կա-
տարելու համար համաժողովրդական մրցու-
թյան ընթացքին, ոչ միայն հետևում, այլև
տոն է տալիս, ոգեշնչում մարդկանց դեպի
նորանոր սխրանքների։
Այդ լավ գործերի մասին շատ բան ունեն
պատմելու իրենց ունկնդիրներին ագիտա-
տորները՝ Սովետական մամուլի օրվան նվիր-
ված իրենց զրույցներում։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Աշխատավորների միջազգային տոնը, Մայիսի մեկը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մայիսի մեկը, *Երկեր, հատոր 7, էջ 243—248, Հայպետհրատ, 1949։*

Վ. Ի. Լենին— Մայիսի մեկը, *Երկեր, հատոր 8, էջ 439—444, Հայպետհրատ, 1949։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ելույթ ճառ Կարմիր հրապարակում 1 մայիսի 1919 թ., *Երկեր, հատոր 29, էջ 397—401, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին, *զեկուցում ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարում 1959 թվականի հունվարի 27-ին, Հայպետհրատ, 1959։*



## 2. Սովետական մամուլի օրը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մեր թերթերի բնույթի մասին, *Երկեր, հատոր 28, 106—109, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ինչից սկսել, *Երկեր, հատոր 5, էջ 11—25, Հայպետհրատ, 1948։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին, *զեկուցում ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարում 1959 թվականի հունվարի 27-ին, Հայպետհրատ, 1959։*

Մեր մամուլի կարևորագույն խնդիրները, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի մարտի 20-ի համարում։*

## 3. Աշխատանքային նոր հաջողություններով դիմավորենք Սովետական Հայաստանի 40-ամյակը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Զեկուցում ՀԿՊ XX համագումարին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959*

*թվականի հունվարի 11-ի համարում։*

Հայաստանի Կոմպարտիայի Կենտրոնական Կոմիտեում, *ինֆորմացիոն հաղորդագրություն Հայկական ՍՍՌ-ի 40-ամյակի տոնակատարությանը նախապատրաստվելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի մարտի 29-ի համարում։*

Հայկական տնտեսական վարչական շրջանի ժողովրդական տնտեսության խորհրդի ձեռնարկությունների, կառույցների, սովխոզների և կազմակերպությունների կոլեկտիվների ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի մարտի 7-ի համարում։*

4. Ժամկետից շուտ կատարենք յոթնամյա պլանը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Յոթնամյա պլանը և ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդրի կատարումը, *ՍՄԿՊ XXI համագումարին տրված զեկուցումից, էջ 82—89, Հայպետհրատ, 1959։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի բանաձևը,



ընկեր Ն. Ս. Խրուշչովի «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին» *զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1959։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացումը յոթնամյակում, *ՀԿՊ XX համագումարին տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 11-ի համարում։*

5. Երկրին տանք ավելի շատ եվ ավելի բարձրորակ արդյունաբերական արտադրանք

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սոցիալիստական արդյունաբերության և տրանսպորտի զարգացման հարցերը, *ՍՄԿՊ XXI համագումարին տված զեկուցումից, էջ 24—38, Հայպետհրատ, 1959։*

Արդյունաբերության աշխատողների մրցությունը, *«Ս. Հ.»-ի 1959 թվականի մարտի 10-ի առաջնորդողը։*

Յոթնամյա պլանը գործողության մեջ, *նյութեր Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի կոմունիստների աշխատանքի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի մարտի 20-ի համարում։*

### 6. Կառուցենք արագ, էժան և որակով

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Կապիտալ շինարարությունը և արտադրողական ուժերի տեղաբաշխումը, *ՍՄԿՊ XXI համագումարին տրված զեկուցումից, էջ 45—58, Հայպետհրատ, 1959։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Կապիտալ ներդրումները ժողովրդական տնտեսության մեջ, *ՀԿՊ XX համագումարին տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 11-ի համարում։*

Հայաստանի ԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի մարտի 21-ի համարում։*

### 7. Սեղմ ժամկետում և բարձր ցուցանիշներով կատարենք յոթնամյակի առաջին տարվա գարնանցանը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման հարցերը, *ՍՄԿՊ XXI համագումարին տրված զեկուցումից, էջ 38—44, Հայպետհրատ, 1959։*



Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի բանաձևը, *էջ 27—30, Հայպետհրատ, 1959։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Գյուղատնտեսության հետագա վերելքը, *ՀԿՊ XX համագումարին տրված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի հունվարի 11-ի համարում։*

Մեծ գործերի առաջին գարունը, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1959 թվականի 3-րդ համարում։*

### 8. Կոմունիստական պարտիան անդադրում հոգ է տանում ժողովրդի բարեկեցության համար

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Սովետական ժողովրդի բարեկեցության աճը, *ՍՄԿՊ XXI համագումարին տրված զեկուցումից, էջ 58—69, Հայպետհրատ, 1959։*

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեում և ՍՍՌՄ Մինիստրների Սովետում, *Հասարակական սննդի հետագա զարգացման ու բարելավ-*

ման մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի մարտի 1-ի համարում։

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեում և ՍՍՌՄ Մինիստրների Սովետում, բնակչության կենցաղային սպասարկումը բարելավելու միջոցառումների մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1959 թվականի մարտի 13-ի համարում։

Անդադրում հոգատարություն ժողովրդի նկատմամբ, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1959 թվականի 6-րդ համարում։

---

## СОДЕРЖАНИЕ



---


**Խմբագիր՝ Վ. ԲՋՆՑԻՆԻ**